Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 19 (97)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 19 (97)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





# ԱՇԽԱՏԱՆՔԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Աշխատանքը մեր սոցիալիստական հասարակության զարգացման և բարգավաճման ամենաառաջին, ամենաանհրաժեշտ պայմանն է: Այդ միշտ ընդգծել է Լենինը: Այդ շարունակ մատնանշում է ընկեր Ստալինը.*

*«Երբեմն ասում են, թե որ սոցիալիզմ է, էլ ի՞նչ կարիք կա աշխատելու: Աշխատում էինք առաջ, աշխատում ենք այժմ,— մի՞թե ժամանակը չէ աշխատելուց դադարել: Այդպիսի խոսքերն արմատապես սխալ են, ընկերնե՛ր: Դա լոդրերի փիլիսոփայությունն է, և ոչ թե ազնիվ աշխատողների: Սոցիալիզմն ամենևին չի ժխտում աշխատանքը: Ընդհակառակը, սո-*

ցիալիզմը կառուցվում է աշխատանքի վրա։ Սոցիալիզմն ու աշխատանքն անբաժանելի են միմյանցից» (Ի. Ստալին, «Լենինիզմի հարցերը», էջ 781—782. Հայկուսհրատ, 1937 թ.)։

Լենինը սովորեցնում էր. «Աշխատանքի արտադրողականությունը, այդ, վերջին հաշվով, ամենից կարևորը, ամենից գլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար։ Կապիտալիզմը ստեղծել է ճորտատիրության օրոք չտեսնված աշխատանքի արտադրողականություն։ Կապիտալիզմը կարող է վերջնականապես պարտվել և վերջնականապես կպարտվի այն բանով, որ սոցիալիզմը ստեղծում է նոր, շատ ավելի բարձր աշխատանքի արտադրողականություն» (Լենին, Երկերի վեցհատորյակի հ. V, էջ՝ 445, Հայկուսհրատ 1935 թ.)։

Իսկ ինչու սոցիալիզմի օրոք իրագործելի է աշխատանքի ավելի բարձր արտադրողականություն, քան կապիտալիզմի օրոք։

Որովհետև ոչնչացված են հին արտադրական հարաբերությունները, որոնք կաշկանդում էին արտադրողական ուժերի զարգացումը։ Ոչնչացված է արտադրության գործիքների և միջոցների մասնավոր սեփականությունը։ Լիկվիդացիայի են են-



թարկված շահագործող դասակարգերը և մարդու կողմից մարդու շահագործման հնարավորությունը։ «Ուրիշների համար կատարվող աշխատանքի, շահագործողների համար կատարվող ստրկական աշխատանքի հարյուրամյակներից հետո առաջին անգամ երևան է գալիս իր համար աշխատելու հնարավորություն, ընդ որում այնպիսի աշխատանքի, որը հիմնվում է նորագույն տեխնիկայի և կուլտուրայի բոլոր նվաճումների վրա» (Լենին, Երկեր հ. XXII, էջ 161)։

Այստեղից է բխում ամբողջ սովետական ժողովրդի, սոցիալիզմի երկրի բոլոր աշխատավորների խոր շահագրգռությունը աշխատանքի արտադրողականության բարձր մակարդակի հասնելու խնդրով։ Ինչքան բարձր է աշխատանքի արտադրողականությունը, այնքան հարուստ է դառնում մեր երկիրը, այնքան ուժեղ է նրա պաշտպանական հզորությունը, այնքան շուտ մենք կհասնենք մթերքների և սպառման ամեն տեսակ առարկաների առատության, որը լիակատար կոմունիզմին անցնելու անհրաժեշտ պայմանն է հանդիսանում։

Աշխատանքի արտադրողականության հարցն անխզելիորեն կապված է աշխատանքային կարգապահության հարցի հետ: Աշխատանքի յուրաքանչյուր հասարակական կազմակերպումը պահանջում է աշխատանքի որոշակի կարգապահություն, նա չի կարող գոյություն ունենալ առանց կարգապահության: Դասակարգային, շահագործողական հասարակության մեջ աշխատանքի կարգապահությունը հանդիսանում է գավազանի և քաղցի կարգապահություն, շահագործողների համար աշխատող ստրկացած մարդու կարգապահություն: Մեր սոցիալիստական հասարակության մեջ աշխատավորներն աշխատում են ոչ թե շահագործողների, այլ իրենց համար, իրենց սոցիալիստական հասարակության համար:

Լենինն ու Ստալինն ընդգծում են աշխատանքի սոցիալիստական կարգապահության բացառիկ կարևոր նշանակությունը, պահանջում են վճռականորեն պայքարել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք արմատացնելու համար, աշխատանքի երկաթյա կարգապահություն ստեղծելու համար:

Լենինը կոչ էր անում «ամբողջ ուշա-



դրությունը կենտրոնացնել աշխատանքային կարգապահության հարցերի վրա, որը ողջ տնտեսական շինարարության մեխն է...» (Լենին, Երկեր, հ. XXV, էջ 139):

Լենինն ասում էր. «Հարկավոր է պրոլետարական աշխատանքային կարգապահությունը հասցնել լարման ամենաբարձր աստիճանին, և այն ժամանակ մենք անպարտելի կլինենք» (Լենին, Երկեր, հ. XXV, էջ 254):

Լենինը պահանջում էր. «Ճշտապահ ու բարեխիղճ կերպով պահիր փողի հաշիվը, տնտեսությունը վարիր խնայողաբար, ծուլություն մի անիր, մի գողանար, ամենախիստ կարգապահություն պահպանիր աշխատանքի մեջ...» (Լենին, Երկեր, հ. XXII էջ 443):

Այդ նույն բանն է սովորեցնում մեզ ընկեր Ստալինը:

Աշխատանքի նոր, սոցիալիստական կարգապահության ստեղծումը կապված է լուրջ, համառ և երկարատև պայքարի հետ՝ մարդկանց կոմունիզմի ոգով վերադաստիարակելու համար, մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների դեմ պայքարելու հետ, մասնավոր-

սեփականատիրական տրադիցիաների, մանր-բուրժուական թափթփվածության դեմ պայքարելու հետ:

Լենինն ասում էր. «Իհարկե, ստրկական աշխատանքի՝ մարդկության պատմության մեջ մեծագույն այս փոխարինումը ինքն իր համար կատարվող աշխատանքով չի կարող տեղի ունենալ առանց բախումների, դժվարությունների, կոնֆլիկտների, առանց թունդ պորտաբույծների նկատմամբ բռնություն գործ դնելու...» (Լենին, Երկեր, հ. XXII, էջ 161):

Լենինը, պորտաբույծներին, ժուլիկներին և խուլիգաններին հարուստների կողքը դընելով, ասում էր, որ թե մեկը և թե մյուսը հարազատ եղբայրներ են, կապիտալիզմի զավակները, բուրժուական հասարակության որդիները, որ դա նույն մեդալի երկու կողմերն են, պարազիտների երկու գլխավոր տեսակները:

Աշխատանքի սոցիալիստական կարգապահության ստեղծման համար մղվող պայքարը Լենինը և Ստալինը դիտում են որպես դասակարգային պայքարի ձևերից մեկը պրոլետարիատի դիկտատուրայի ժամանակաշրջանում: Դա պայքար է ամբողջ բանվոր դասակարգի շահերի համար: Լենինը



կոչ էր անում բանվոր դասակարգի շահերը պաշտպանել պորտաբույծներից և ժուլիկներից, «բանվորների այն խմբակներից, խմբերից, խավերից, որոնք համառորեն հետևում են կապիտալիզմի տրադիցիաներին (սովորույթներին) և շարունակում են նայել Սովետական պետության վրա առաջվա պես— տալ նրան ավելի քիչ և ավելի վատ աշխատանք»,— պոկել «նրանից» ավելի շատ փող» (Լենին, Երկեր, հ. XXIII, էջ 213):

Ընկեր Ստալինը մատնանշում է. «Պայքարել գործալքումների դեմ, պայքարել աշխատանքի արտադրողականության բարձրացման համար՝ հօգուտ մեր արդյունաբերության, հօգուտ ամբողջ բանվոր դասակարգի առհասարակ,— այդպիսին է խնդիրը» (Լենինը և Ստալինը աշխատանքի մասին» էջ 436: Պրոֆհրատ. 1940 թ.):

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ «մարդկանց գիտակցությունն իր զարգացումով հետ է մնում նրանց փաստական դրությունից» (Ի. Ստալին, «Լենինիզմի հարցերը», էջ 746, Հայկուսհրատ., 1937 թ.): Դրա համար էլ մեր սոցիալիստական հասարակության անդամների, բանվորների ծառայողների, կոլխոզնիկների մեջ ևս քիչ

չեն այնպիսի մարդիկ, որոնք հին հասարակության մնացուկների կրողներն են հանդիսանում։ Հարկավոր է հիշել, որ սոցիալիզմի թշնամիները, սովետական ժողովրդի թշնամիները սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում աշխատել են ամեն կերպ աջակցել այդ մնացուկներին (մասնավորապես փորձել են քայքայել աշխատանքի սոցիալիստական կարգապահությունը), որ «դեռևս գոյություն ունի կապիտալիստական շրջապատումը, որն աշխատում է աշխուժացնել ու պաշտպանել կապիտալիզմի մնացուկները ՍՍՌՄ-ի էկոնոմիկայում և մարդկանց գիտակցության մեջ, և որի դեմ մենք, բոլշևիկներս, պետք է վառոդը շարունակ չոր պահենք» (Ի. Ստալին, «Լենինիզմի հարցերը», էջ 848, Հայկուսհրատ, 1937 թ.)։

* * *

Աշխատավորների ճնշող մեծամասնությունն աշխատում է ազնվորեն, բարեխղճորեն. միլիոնավոր հարվածայիններ և ստախանովականներ ցույց են տալիս աշխատանքի նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքի օրինակներ, ցուցաբերում են աշխատանքի իսկական հերոսություն, տոն



են տալիս սովետական հասարակության ողջ առօրյա կյանքում և աշխատանքում։

Աշխատանքի վերաբերյալ հայացքների, մասսաների հոգեբանության մեջ տեղի են ունեցել արմատական փոփոխություններ։ Ծանր և ամոթալի բեռից, ինչպիսին համարվում էր աշխատանքն առաջ, նա դարձել է «պատվի գործ, փառքի գործ, արիության և հերոսության գործ» (Ի. Ստալին, «Լենինիզմի հարցերը», էջ 393, 10-րդ Ռուսհրատ.)։

Աշխատանքի լավագույն մարդիկ, հարվածայինները և ստախանովականները, սովետական ժողովրդի սիրելիներն են հանդիսանում։ Կառավարությունը նրանց պարգևատրում է ՍՍՌ Միության շքանշաններով և մեդալներով։ Սահմանված է «Սոցիալիստական աշխատանքի հերոս» կոչումը։

Լենինը մատնանշում էր, որ օրինակի ուժը— աշխատավորների ինքնակարգապահությունը բարձրացնելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, պրոդուկտների հանդեպ խնամքոտ վերաբերմունք ունենալու օրինակի ուժը— պետք է վիթխարի նշանակություն ստանա սոցիալիստական հասարակության մեջ։ Օրինակի

ուժը պետք է դառնա աշխատանքի կազմակերպման առաջին հերթին բարոյական, ապա և հարկադրաբար մտցվող ախպար՝ նոր, սովետական Ռուսաստանում» (Լենին, Երկեր, հ. XXII, էջ 413):

Լենինը պահանջում էր, որ պարտիայի մեջ ընդունվեն միայն նրանք, որոնք իսկական սոցիալիստական վերաբերմունք են ցուցաբերում դեպի աշխատանքը: Լենինն ասում էր. «...Կոմունիստները նոր անդամների են թույլատրում պարտիայի մեջ ոչ թե նրա համար, որ նրանք օգտվեն կառավարական պարտիայի դրության հետ կապված առավելություններից, այլ նրա համար, որ նրանք ցույց տան իսկական կոմունիստական աշխատանքի օրինակ...» (Լենին, Երկեր, հ. XXIV, էջ 585):

Լենին-Ստալինի պարտիայի անդամի բարձր ու պատվավոր կոչումը պահանջում է, որ յուրաքանչյուր կոմունիստ ցույց տա աշխատանքի սոցիալիստական կարգապահության օրինակներ, աշխատանքի նկատմամբ ազնիվ վերաբերմունքի օրինակ հանդիսանա, գլխավորելով մասսաների ստեղծագործական վերելքը, մասսաների վրա ներգործելով ոչ միայն խոսքով, այլև իր անձնական օրինակով:



Լենինը և Ստալինը ստեղծեցին սոցիալիստական մրցակցության ուսմունքը: Սոցիալիստական մրցակցության մեջ իրենց արտահայտությունը գտան՝ աշխատանքի բնույթի փոփոխումը սոցիալիզմի օրով, օրինակի ուժի դերը և արմատական բեկումը աշխատանքի, աշխատանքային կարգապահության նկատմամբ աշխատավորության ամենալայն մասսաների կողմից ցուցաբերվող վերաբերմունքի մեջ: Լենինյան-ստալինյան սոցիալիստական մրցակցության հիմնական սկզբունքը կայանում է հետ մնացողներին օգնություն ցույց տալու մեջ, ընդհանուր վերելքի շահերից ելնելով նրանց առաջավորների մակարդակի վրա բարձրացնելու մեջ: «Սոցիալիստական մրցակցությունն ասում է— ոմանք աշխատում են վատ, մյուսները լավ, երրորդները ավելի լավ,— հասի՛ր լավագույններին և ձեռք բեր ընդհանուր վերելք» (Ստալին):

***

Լենինն իրեն հատուկ կրքոտությամբ ատում, խորապես արհամարհում էր լոդրերին, պորտաբույծներին: Նա չէր խնայում նրանց, չէր խնայում բառեր և արտահայտություններ արտադրության կար-

մալուծիչների, աշխատանքային կարգապահությունը խախտողների, իրենց հարազատ, ժողովրդական, սոցիալիստական ձեռնարկության համար սրտացավ վերաբերմունք չցուցաբերողների վերաբերմամբ: Լենինը նրանց կոչում էր սրիկաներ, մորթապաշտներ և պարազիտներ: Նա նրանց որակում էր որպես ժողովրդի և սոցիալիզմի գլխավոր թշնամիներ, որպես մարդկության տականքներ, որպես վարակ, ժանտախտ, խոց, որպես մատնիչներ և դավաճաններ, «որոնց բանվոր դասակարգը պետք է դատափետի և խայտառակի» «Լենին, Երկեր, հ. XXV, էջ 135):

Լենինը սովորեցնում էր, որ սոցիալիզմը հաշվառում է: Դեռևս Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախօրյակին Լենինը գրել է իր «Պետություն և հեղափոխություն» գրքում, որ մինչև լիակատար կոմունիզմի գալուստը կպահանջվի «խստագույն վերահսկողություն հասարակության կողմից և պետության կողմից աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ...» (Լենին, Երկեր, հ. XXI, էջ 437):

Հետագայում, արդեն իսկ սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից հետո



ՍՍՌՄ-ում, Լենինը բազմիցս ընդգծել է, որ հաշվառումն ու վերահսկողությունը յուրաքանչյուր Սովետի գլխավոր տնտեսական խնդիրն են: Լենինը գրել է. «Հաշվառում և վերահսկողություն աշխատանքի քանակի և պրոդուկտների բաշխման նկատմամբ— դրանումն է սոցիալիստական վերափոխման էությունը, քանի որ պրոլետարիատի քաղաքական տիրապետությունն ստեղծված և ապահովված է» (Լենին, Երկեր, հ. XXII, էջ 163):

Ծաղրանելով լոդրերի «փիլիսոփայությունը» ընկեր Ստալինը հիշեցնում է, որ «Լենինը, մեր մեծ ուսուցիչը, ասում էր— «Ով չի աշխատում, նա չի ուտում»:

Եվ իսկույն էլ ընկեր Ստալինը բացատրում է. «Ի՞նչ է նշանակում այդ, ո՞ւմ դեմ են ուղղված Լենինի խոսքերը: Շահագործողների դեմ, նրանց դեմ, ովքեր իրենք չեն աշխատում, այլ ուրիշներին են հարկադրում աշխատել և հարստանում են ուրիշների հաշվին: Է՞լ ում դեմ: Նրանց դեմ, ովքեր իրենք լոդրություն են անում և ուզում են շահվել ուրիշների հաշվին: Սոցիալիզմը պահանջում է ո՛չ թե ծուլություն անել, այլ այն, որ բոլոր մարդիկ աշխատեն ազնվորեն, աշխատեն ոչ թե ու-

րիչների համար, ոչ թե հարուստների ու շահագործողների համար, այլ իրենց համար, հասարակության համար» (Ստալին, «Լենինիզմի հարցերը», էջ 782, Հայպետհրատ., 1937 թ.):

Այս պահանջը դրոշմվել է հաղթանակած սոցիալիզմի Ստալինյան Կոնստիտուցիայի մեջ: ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 12-րդ հոդվածն ասում է. «Աշխատանքը ՍՍՌՄ-ում աշխատանքի ընդունակ յուրաքանչյուր քաղաքացու պարտականությունն ու պատվի գործն է՝ համաձայն «ով չի աշխատում, նա չի ուտում» սկզբունքի: Իսկ 130-րդ հոդվածն ուղղակի խոսում է այն մասին, որ յուրաքանչյուր քաղաքացու պարտականությունն է պահպանել աշխատանքի կարգապահությունը:

Հաշվի առնելով աշխատանքային կարգապահության համար պայքարելու հարցի բացառիկ մեծ նշանակությունը, Լենինը կոչ էր անում այդ պայքարը մղել անխնա կերպով, որպես մահու և կենաց կռիվ, ուրվագծելով: «Ամեն մի թուլություն, ամեն տեսակի տատանումներ, ամեն մի սանտիմենտալ վերաբերմունք՝ այս տեսակետից մեծագույն ոճրագործությունը կլինի սոցիալիզմի հանդեպ» (Լենին. Երկեր, հ. XXII, էջ 164):



Լենինը պահանջում էր, որ «բոլորն աշխատեն բարեխղճորեն, որ ոչ մի ծույլիկ (այդ թվում նաև աշխատանքից խուսափողը) ազատ ման չգա, այլ բանտ նստի կամ պատիժը կրի ամենածանր տեսակի հարկադիր աշխատանքներում...» (Լենին, Երկեր, հ. XXII, էջ 166):

Լենինն առաջարկում էր մաքրել «Ռուսաստանյան հողը ամեն տեսակի վնասատու միջատներից»: Նա մատնանշում էր, թե ինչպիսի միջոցներով հարկավոր է գործել. «Մի տեղում բանտ են նստացնում մի տասնյակ հարուստների, մի դյուժին ծույլիկների, կես դյուժին աշխատանքից խուսափող բանվորների.. Մի այլ տեղում նրանց ուղարկում են արտաքնոց մաքրել: Երրորդ տեղում՝ կարցերից դուրս գալուց հետո նրանց տալիս են դեղին տոմսեր, որպեսզի ամբողջ ժողովուրդը, մինչև նրանց ուղղվելը, նրանց վերահսկի որպես վնասակար մարդկանց: Չորրորդ տեղում՝ պորտաբուծության մեջ մեղավոր հանդիսացող տասից մեկին գնդակահարում են տեղն ու տեղը...» (Լենին, Երկեր, հ. XXII, էջ 166—167):

Այս տողերը գրվել են դաժան մի ժամանակաշրջանում, 1918 թվի սկզբին, այն ժամանակ, երբ ամենա[illegible] գոտեմարտ

էր գնում ռեակցիայի սև ուժերի դեմ, նրա մենշևիկ-էսերական և այլ պոչուկների դեմ, որոնք փորձում էին հարված հասցնել երիտասարդ Սովետական ռեսպուբլիկային բոլոր միջոցներով, մասնավորապես աշխատանքային կարգապահությունը ջլատելու, քայքայելու ճանապարհով:

Լենինը բազմիցս ընդգծել է, որ անկարգապահության և թափթփվածության դեմ, մանր – բուրժուական անարխիականության տարրերի դեմ պայքարը «չի կարելի մղել միայն պրոպագանդայով և ագիտացիայով, միայն մրցակցության կազմակերպմամբ, միայն կազմակերպիչների ընտրությամբ,— պայքար պետք է մղել նաև հարկադրանքով» Լենին, Երկեր, հ. XXII, էջ 460):

Այդ պայքարում առանձնապես կարևոր դեր էր հատկացնում Լենինը սովետական դատարանին: «...Դատարանը կարգապահություն դաստիարակելու մի զենք է»,— ասում էր Լենինը (Երկեր, հ. XXII, էջ 460): «Մեզ հարկավոր է պետություն, մեզ հարկավոր է հարկադրանք: Այդպիսի հարկադրանք իրագործող պրոլետարական պետության օրգանը պետք է լինեն սովետական դատարանները: Եվ նրանց վրա է դրվում ազգաբնակչությանն աշխատանքային կար-



գապահության դաստիարակելու վիթխարի խնդիրը» (Լենին, Երկեր, հ. XXII, էջ 424):

***

Հարկավոր է պարզ ու որոշակի հասկանալ, որ գործալքների, չվողների և աշխատանքային կարգապահությունը խախտող նման այլ անձանց քանակապես չնչին խմբակը վիթխարի վնաս է հասցնում երկրին:

Մենք ունենք բարձր տեխնիկայով հագեցած խոշոր, սոցիալիստական արտադրություն: Այս պայմաններում արտադրական պրոցեսով սերտորեն շաղկապված է շատ մարդկանց աշխատանքը. մի մարդու աշխատանքի չգալը կամ ուշանալը, նրա փոխարինումը նոր աշխատողով և նման այլ երևույթները խիստ անդրադառնում են ամբողջ կոլեկտիվի արտադրողականության վրա, իրենց հետ բերում են այնպիսի քանակությամբ պրոդուկցիայի թերարտադրանք, որը շատ անգամ գերազանցում է մեկ մարդու արտադրածի տեսակարար կշռից: Այդ առանձնապես ուժգին է զգացվում այնտեղ, ուր գործում է կոնվեյերային սիստեմը. այդտեղ մեկ գործալքի

պատճառով 10—15%-ով ընկնում է տվյալ կոնվեյերի վրա զբաղված հարյուր ավելի աշխատողների արտադրանքը:

Երկիրը հսկայական քանակությամբ մետաղ և վառելանյութ, մեքենաներ և դազգահներ, կտորեղեն, կոշկեղեն և այլ ամեն բան պակաս է ստանում 8 ժամյա աշխատանքային օրվա ոչ-լրիվ օգտագործման պատճառով, առանձին աշխատողների անջանասեր, անկուլտուրական, թափթփված աշխատանքի պատճառով:

Չվողների, դասալքությունների պատճառով երկիրը ստիպված է լինում ավելորդ շատ միջոցներ ծախսել նոր բանվորների ուսուցման վրա: Պետության հաշվին մի գործարանում մի մասնագիտություն սովորելով, չվողը շուտով ընկնում է մի այլ գործարան, ուր հարկ է լինում դարձյալ միջոցներ ծախսել նրան այլ մասնագիտություն սովորեցնելու համար և այլն: Դրա հետևանքով խոշոր գործարանները նոր կադրերի ուսուցման վրա ծախսում են տարեկան մինչև մեկ միլիոն և ավելի ռուբլի, իսկ ամբողջ երկրի մասշտաբով այդ կազմում է շատ միլիոններ:

Իսկ ինչքա՞ն է կորցնում երկիրը հումքի, դազգահների, մեքենաների և այլ սար-



քավորման փչացումից այն բանի շնորհիվ, որ հոսունության, չվումների և գործալքումների պատճառով դազգահների, մեքենաների ու կոնվեյերների վրա շարունակ դրվում են նոր, սակավափորձ բանվորներ:

Ընկեր Ստալինը դեռևս 1931 թվին մատնանշել է, որ այժմ, «երբ արտադրության մասշտաբները հսկայական են դարձել, իսկ տեխնիկական սարքավորումը՝ ծայր աստիճան բարդ,— աշխատանքային ուժի հոսունությունը դարձել է արտադրության պատուհաս, որ կազմալուծում է մեր ձեռնարկությունները: Այժմ «հանդուրժել» աշխատանքային ուժի հոսունությունը— նշանակում է քայքայել մեր արդյունաբերությունը, ոչնչացնել արտադրական պլանների կատարման հնարավորությունը, ճախողել արտադրանքի որակի լավացման հնարավորությունը» (Ստալին, «Լենինիզմի հարցեր», էջ 665, Հայպետհրատ, 1935 թ.):

Տարիներ շարունակ պարտիան և կառավարությունը մի ամբողջ շարք միջոցառումների ճանապարհով պայքարեցին այդ չարիքի դեմ: Քիչ հաջողություններ ձեռք չեն բերված այս գործում, շատ մարդիկ վերադաստիարակվել են այդ ժամանակա-

միջոցում, դարձել են բարեխիղճ աշխատողներ, սիրել են իրենց դազգահը, իրենց գործարանը:

Բայց դեռ չեն փոխվել թռնդ. լողրերն ու չվողները, աշխատանքային կարգապահության չարամտորեն խախտողները, դատարկապորտները, որոնք սիրում են կյանք անել ի հաշիվ պետությունից գողացված աշխատանքային ժամանակի: Հիմնականում դրանք առանձին անկայուն տարրերն են երիտասարդության այն ոչ-մեծ մասից, որը կոմերիտմիության ազդեցությունից դուրս է մնացել և ենթարկվել է մանր-բուրժուական անարխիականության ու թափթփվածության տարերքին:

Օգտվելով այն բանից, որ մեր երկրում վերացել է գործազրկությունը, ռեալ կերպով ապահովված է աշխատանքի իրավունքը, գործալիքները, չվողները և արտադրության մյուս կազմալուծիչները ձեռնարկությունից-ձեռնարկություն էին վազում, ընկնելով ավելի մեծ վաստակի հետևից, սովետական պետությունից պոկելով ավելի շատ և նրան տալով ավելի քիչ ու ավելի վատ աշխատանք: Նրանք խարեբայաբար ուղիներ են գտնում սովետական օրենքները զանց անելու համար: Նրանք



կազմալուծում են մտցնում ձեռնարկությունների աշխատանքի մեջ:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1940 թվի հունիսի 26-ի հրամանագիրը վճռական հարված է հասցնում այդ բոլոր պորտաբույծներին և աշխատանքի սոցիալիստական կարգապահության խախտողներին: Այս կարևորագույն փաստաթուղթը, անտարակույս, արտահայտում է բոլոր ազնիվ աշխատավորների կամքը:

Սովետական ժողովուրդը չի կարող այլևս հանդուրժել, որ մի բուռը լողրեր անպատիժ կերպով խախտեն սովետական պետության օրենքները, վիթխարի վնաս հասցնեն երկրին, ջլատեն նրա տնտեսական և պաշտպանական հզորությունը, արգելակեն մեր առաջխաղացումը կոմունիզմի ուղիով: Սովետական ժողովուրդը չի կարող թույլ տալ մեր երկրի մեծագույն նվաճման— գործազրկության բացակայության, սոցիալիզմի մեծագույն նվաճման— աշխատանքի երաշխավորված իրավունքի լկտի չարաշահումը:

Առանց խնայելու, առանց ցերեմոնիաների և սանտիմենտալ վերաբերմունքի, հաստատուն ձեռքով, ինչպես սովորեցրել է Լենինը, ինչպես սովորեցնում է Ստալինը, հար-

կավոր է արտադրության մեջ հաստատել աշխատանքի երկաթյա կարգապահություն, հասնել աշխատանքի բոլոր ութ ժամերի ազնիվ, բարեխիղճ օգտագործման, լիակատար աշխատանքային օրվա օգտագործման, որը հանդիսանում է ամենակարճ աշխատանքային օրը աշխարհում:

***

Աշխատանքի սոցիալիստական երկաթյա կարգապահությունը հանդիսանում է սոցիալիստական հասարակության կյանքի ու բարգավաճման և սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ամենավճռական, ամենաանհրաժեշտ պայմաններից մեկը:

Անչափ մեծ է աշխատանքի սոցիալիստական կարգապահության պաշտպանական նշանակությունը:

Լենինը և Ստալինը աշխատանքային խստագույն կարգապահության պահանջը սերտորեն շաղկապում են երկրի անվտանգությունն ու ռազմական հզորությունն ապահովելու խնդրի հետ:

Պահանջելով դաժան կերպով պատժել աշխատանքային կարգապահության խախտողներին, խոսելով նրանց նկատմամբ



հարկադրանքի միջոցներ կիրառելու անհրաժեշտության մասին, Լենինը կոչ էր անում խաղաղ դադարի ժամանակաշրջանն այնպես օգտագործել, որ լրջորեն բարձրացվի մեր հայրենիքի պաշտպանունակությունը: Լենինը գրում էր, թե «...նա, ով այժմ նահանջում է կարգապահությունից, նա թշնամիներին թույլ է տալիս մտնել իր շրջանը» (Լենին, Երկեր, հ. XXVII, էջ 45):

Ընկեր Ստալինը մեզ հիշեցնում էր այն բանը, որ կապիտալիստական աշխարհում գործում է գայլի օրենքը— խփել հետամնացներին: Ընկեր Ստալինը մատնանշում էր, որ մեր երկիրը պետք է ամենակարճ ժամանակամիջոցում վերջ տա իր դարավոր հետամնացությանը: Եվ Լենին-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, մասսաների աշխատանքային հերոսության շնորհիվ, մենք վաղուց արդեն վերջ ենք տվել մեր երկրի վաղեմի տնտեսական և ռազմական հետամնացությանը: Բայց ինքնահանգստացումը տեղ չպետք է ունենա: Մենք պետք է անդուլ կերպով ամրապնդենք մեր հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորությունը:

Այդ առանձնապես տիրաբար թելադրում

է ներկա օրերի միջազգային բարդ և չափազանց լարված իրադրությունը:

Ընկ. Մոլոտովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի այս տարվա օգոստոսի 1-ի նիստում ասաց.

«Այս պայմաններում Սովետական Միությունը պետք է ուժգին զգաստություն ցուցաբերի իր արտաքին անվտանգության գործի նկատմամբ, իր բոլոր ներքին և արտաքին դիրքերն ամրապնդելու նկատմամբ: Մենք անցում կատարեցինք 7-ժամյա աշխատանքային օրվանից 8-ժամյա աշխատանքային օրվա և կիրառեցինք այլ ձեռնարկումներ, նկատի ունենալով, որ մենք պարտավոր ենք ապահովել երկրի պաշտպանական և տնտեսական հետագա ու էլ ավելի հուժկու վերելքը, ապահովել կարգապահության լուրջ ամրապնդումը բոլոր աշխատավորների մեջ, ուժեղ թափով աշխատել մեր երկրում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու ուղղությամբ: Մենք ունենք վոչ փոքր նոր հաջողություններ, բայց մենք չենք պատրաստվում հանգստանալ ձեռք բերածով: Սովետական Միության հետագա անհրաժեշտ հաջողություններն ապահովելու համար, մենք միշտ պետք է հիշենք ընկեր



Ստալինի այն խոսքերը, որ «հարկավոր է մեր ամբողջ ժողովուրդը պահել մոբիլիզացիոն պատրաստության վիճակում՝ ռազմական հարձակման վտանգի դեմ հանդիման, որպեսզի ոչ մի «պատահականություն» և մեր արտաքին թշնամիների ոչ մի տեսակի փոկուսներ չկարողանան մեզ հանկարծակիի բերել»:

Այդ պետք է լավ յուրացնեն մեր մեծ հայրենիքի բոլոր աշխատավորները և հասկանան, որ պայքարը աշխատանքի սոցիալիստական երկաթյա կարգապահության համար, հունիսի 26-ի Հրամանագրի անշեղ կենսագործման համար հանդիսանում է մեր սոցիալիստական հասարակության բոլոր ազնիվ աշխատավորների հարազատ գործը, հարազատ պարտականությունը, որ չի կարող լինել աշխատանքի սոցիալիստական կարգապահության համար չպայքարող սովետական հայրենասեր:

---

# ԵԳԻՊՏՈՍ

(Տեղեկանք)

## ՏԵՐԻՏՈՐԻԱՆ ԵՎ ԱԶԳԱԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

*Եգիպտոսը գտնվում է Աֆրիկայի հյուսիս-արևելյան անկյունում և գրավում է 1·050 հազար քառակուսի կիլոմետր տարածությամբ տերիտորիա: Հյուսիսում Եգիպտոսի ափերը ողողվում են Միջերկրական ծովով, արևելքում՝ Կարմիր ծովով, որը Միջերկրական ծովի հետ է միանում Սուեզի ջրանցքով: Արևմուտքում Եգիպտոսը սահմանակից է Իտալական Լիբիայի հետ, հարավում կցված է Անգլո-Եգիպտական Սուդանին, որը սահմանակից է Ֆրանսիական Հասարակածային Աֆրիկային, Բելգիական Կոնգոյին, անգլիական գաղութ Ուգանդային, Հաբեշստանին և իտալական գաղութ Էրիտրեային: Արևելքում Եգիպտոսը սահմանակից է Սաուդական Արաբիային (ծովային սահման) և հյուսիս-արևելքում՝ անգլիական ենթամանդատային տերիտորիա՝ Պաղեստինին:*



*Մշակվող հողերի տարածությունը Եգիպտոսում շատ աննշան է. նա կազմում է ընդամենը 36 հազար քառակուսի կիլոմետր: Մշակելի հողերը ձգված են Նեղոս գետի և նրա ճյուղավորված դելթայի երկայնքով: Նեղոսի արգավանդ հովիտը սկսվում է Վադի-Խալֆի մոտ (Անգլո-Եգիպտական Սուդանի ամենահյուսիսային քաղաքն է) և ձգվում է մինչև Միջերկրական ծովը, վերջում հասնելով 345 կիլոմետր լայնության: Նեղոսի երկու կողմերում սարքված է արհեստական ջրանցքների և ջրային ռեզերվուարների ընդարձակ մի ցանց, որը Նեղոսի ջրերը բաշխում է հարթավայրի վրա արհեստական ոռոգման համար:*

*Եգիպտոսի տերիտորիայի մեծ մասը (մինչև 97%-ը) գրավում է համարյա անմարդաբնակ մի անապատ, որը ծածկված է կամ քարային ապառներով՝ գրանիտով և այլն, կամ էլ ավազով և միանգամայն զուրկ է բուսականությունից ու ջրից: Եգիպտոսի արևմտյան և հարավային սահմաններն անցնում են ամայի ավազուտնե-*

րով, որոնց մեջ բարձրանում են վիթխարի ավազակույտերը: Ամենամեծ անապատը Եգիպտոսի արևմուտքում, որը կոչվում է Լիբիական անապատ, հանդիսանում է Սահարա մեծ անապատի մի մասը: Նեղոսից դեպի արևելք ընկած է Արաբական անապատը և Սուեզի ջրանցքից դեպի արևելք՝ Սինայի անապատը կամ Էտ-Տիխը:

Եգիպտոսի տերիտորիայի վրա ապրում են 15,9 միլիոն եգիպտացիներ— հետնորդներն այն հնագարյան եգիպտացիների, որոնք VII դարից սկսած միաձուլվեցին իրենց նվաճողների՝ արաբների հետ: Ազգաբնակչության խտությունն առավելագույն աստիճանի է հասնում Ստորին Նեղոսի և նրա թևերի՝ Դամյետի և Ռոզետի ափերին (400—750 մարդ մեկ քառակուսի կիլոմետրի վրա):

Ազգաբնակչության մեծագույն մասը կազմում են ֆելլահները— մանր գյուղացիները: Նրանց ազգային լեզուն արաբական նվաճումից հետո դարձավ արաբերենը, իսկ կրոնը՝ իսլամը: Եգիպտացիների մյուս ճյուղը, որը տարբերվում է միայն քրիստոնեական կրոնով, ներկայացնում են կոպտերը, որոնք հաշվվում են ավելի քան մեկ միլիոն մարդ: Դրանից բացի անա-



պատներում ապրում են քոչվոր բեդուինները, իսկ քաղաքներում՝ թյուրքեր, հույներ, հրեաներ և եվրոպացիներ (վերջիններս հաշվվում են ավելի քան 200 հազար հոգի): Եվրոպացիների մեջ առանձին տեղ են գրավում երկրի տնտեսական ու քաղաքական կյանքում իրենց ունեցած տեսակարար կշռով անգլիացիները: Այնուհետև գալիս են ֆրանսիացիները, իտալացիները և հույները:

Եգիպտոսի մայրաքաղաքն է հանդիսանում Գահիրեն 1.065 հազար բնակչությամբ, իսկ գլխավոր նավահանգիստը և անգլիական նավատորմի ռազմա-ծովային բազան՝ Ալեքսանդրիան, 573 հազար բնակչությամբ: Մնացած նավահանգիստները— Պորտ-Սաիդը, Սուեզը, ինչպես նաև Մարսա-Մատրուխ, Սոլլում փոքր նավահանգիստները ստրատեգիական մեծ նշանակություն ունեն:

Եգիպտոսի գլխավոր քաղաքներն ու նավահանգիստները միմյանց հետ կապված են երկաթուղային, ավտոմոբիլային և օդային հաղորդակցությամբ: Երկաթուղագծերի երկարությունն անցնում է 5 հազար կիլոմետրից: Երկաթուղիների մի մասը և օդային տրանսպորտը գտնվում են անգլիացիների ձեռքում:

## ՍՏՐԱՏԵԳԻԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Եգիպտոսը, որը գտնվում է Անգլիայից Հնդկաստան, Ավստրալիա, Հարավային Աֆրիկա և Հեռավոր Արևելք տանող ծովային ու օդային մեծ ճանապարհների խաչաձևման կետում, այն տեղում, ուր իրար են հպվում երեք աշխարհամաս և ուր միահյուսվում են խոշորագույն իմպերիալիստական տերությունների տնտեսական ու ռազմա-ստրատեգիական շահերը, ունի կարևոր ստրատեգիական նշանակություն։

Անգլիայի համար Եգիպտոսը միշտ ունեցել է Մերձավոր Արևելքի հենակետի նշանակություն և հանդիսացել է Անգլիայի մնացած աֆրիկյան գաղութների մի տեսակ ավանպոստը։ Եգիպտոսն օդային հաղորդակցությամբ կապված է անգլիական հիմնական ռազմական բազաների հետ Միջերկրական և Կարմիր ծովում (Ջիբրալտար, Մալթա, Ադեն) և Անգլիայի կոնտրոլի տակ գտնվող երկրների հետ։ Ատլանտյան օվկիանոսի և Միջերկրական ծովի ավազանները Հնդկական և Խաղաղ օվկիանոսների ավազանների հետ կապող ծովային մեծ ճանապարհն անցնում է Եգիպտոսով և Սուեզի ջրանցքով։ Եգիպտոսումն են



գտնվում Անգլիայի ծովային ռազմական բազաները, որոնք զետեղված են Միջերկրական ծովի ափունքին։ Եգիպտոսի տերիտորիայում է անցկացված Սուեզի ջրանցքը— Բրիտանական կայսրության այդ «մայր-շնչերակը», «Արևելքի այդ մեծ ճանապարհը», ինչպես այն կոչել է Մարքսը։

Սուեզի ջրանցքը Միջերկրական ծովը միացնում է Կարմիր ծովի հետ և Լոնդոնից մինչև Բոմբե, ընկնող տարածությունը կրճատում է 43,5%-ով, Լիվերպուլից մինչև Հոնկոնգ՝ 24%-ով և Մարսելից մինչև Բոմբեյ՝ 41%-ով։ Սուեզի ջրանցքով է անցնում Խաղաղ և Հնդկական օվկիանոսների ավազաններից Անգլիա, Իտալիա և Ֆրանսիա ուղարկվող գաղութային հումքի հիմնական մասսան։ Սուեզի ջրանցքով անցնող նավերի տոննաժը 1938 թվին կազմել է 34 միլիոն տոննա։ Սուեզի ջրանցքի օգտագործման մեջ Անգլիան գրավում է առաջին տեղը (60%)։

Հատուկ նշանակություն ունի Սուեզի ջրանցքն Իտալիայի համար։ Նա ոչ միայն նրան կապում է նրա գաղութների՝ Էրիտրեայի ու Իտալական Սոմալիի, ինչպես նաև Հաբեշստանի հետ և այդ ճանապարհը կրճատում է $^4/_5$-ով, այլև ներկայացնում է

նրա համար մինչև ելքը Միջերկրական ծովի արևելյան մասից, որով անցնում է նրա իմպորտային նավթի մի մասը և հումքի ու պարենի զգալի մասը:

Սուեզի ջրանցքի և Եգիպտոսի այս ըստրատեգիական նշանակությունը, Եգիպտոսի, որի տերիտորիայի վրա գտնվում է նա, դրանք դարձրել է իմպերիալիստական տերությունների պահանջախնդրությունների և պայքարի օբյեկտը:

Պատերազմը Եգիպտոսը դարձրեց ռազմական մի պլացդարմ, ուր կենտրոնանում են Բրիտանական կայսրության գաղութային բանակները, որոնք կազմված են հնդիկներից, ավստրալիացիներից, Նոր–զելանդացիներից, ռոդեզիացիներից և այլն: Գահիրեում է գտնվում օդային և ցամաքային ուժերի անգլիական հրամանատարության շտաբը:

Պատերազմական գործողությունների սֆերայի ընդարձակումը և նրանց տեղափոխությունը Միջերկրական ծովի ավազանը՝ Եգիպտոսի համար ստեղծել են անմիջական պատերազմի մեջ ներգրավվելու վտանգ:



## ԵԳԻՊՏՈՍԸ ԵՎ ԱՆԳԼԻԱՆ

Մինչև XIX դարի վերջը Եգիպտոսն իրավաբանորեն համարվում էր Օթմանյան կայսրության մի նահանգը: Եգիպտոսի օկուպացիան Անգլիայի կողմից 1882 թվին և փաստորեն, անգլիական գաղութի վերածվելը Եգիպտոսը դատապարտեցին լիակատար քաղաքական իրավազրկության: Գերագույն իշխանությունը երկրում, որն առաջվա պես ձևականորեն գլխավորում էր եգիպտական սուլթանը, իրականում կենտրոնացած էր անգլիական ընդհանուր հյուպատոսի ձեռքում, որը հենվում էր անգլիական օկուպացիոն բանակի և անգլիական ոստիկանության վրա:

1914 թվի պատերազմի ժամանակ Եգիպտոսը հայտարարվեց Անգլիայի պրոտեկտորատի ներքո, և անգլիական ընդհանուր հյուպատոսը սկսեց երկիրը կառավարել որպես գերագույն կոմիսար: Օկուպացիոն ռեժիմը և եգիպտական գյուղացիության լայն մասսաների վրա դրված ռազմական ծախքերի բեռը ազգային–ազատագրական լայն շարժում առաջացրին Եգիպտոսում:

Պատերազմից հետո, 1919—1921 թվականներին, ռևոլյուցիոն շարժումը, որին

մասնակցում էին եգիպտական բանվորների և գյուղացիների լայն մասսաները, ինչպես նաև եգիպտական ազգային բուրժուազիան, այնպիսի մեծ թափ ընդունեց, որ Անգլիան ստիպված եղավ վերացնել պրոտեկտորատը և հռչակել (1922 թվին) Եգիպտոսի «անկախություն», իսկ հետո (1923 թվին) թույլ տալ կոնստիտուցիայի հաստատում: Այդ կոնստիտուցիայի առաջին հոդվածի համաձայն, Եգիպտոսը հայտարարվում էր սուվերեն, անկախ պետություն՝ ժառանգական միապետությամբ:

1923 թվի կոնստիտուցիան, որ կազմված է ըստ բելգիական օրինակի, որպես բուրժուական կոնստիտուցիա, պարունակում է դեմոկրատական ազատությունների սահմանափակում: Գերագույն իշխանությունը պատկանում է թագավորին, որը կարող է մերժել որևէ օրինագծի հաստատումը: Օրենսդրական իշխանությունն իրագործում են թագավորն ու պարլամենտը, որը բաղկացած է երկու պալատից: Վերին պալատի—սենատի $^2/_5$ մասին թագավորն է նշանակում, իսկ $^3/_5$ մասին ընտրում է ազգաբնակչությունը բարձր պաշտոնակատար անձանց թվից, որոնք ունեն տարեկան առնվազն 1500 եգիպտական ֆնտի եկամուտ:



Սենատը կարող է վերացնել պալատի ընդունած որևէ մի օրենքը: Պալատում ընտրվում են այն քաղաքացիները, որոնք գույքային ցենզ ունեն և 150 եգիպտական ֆնտի չափով գրավ են մուծում: Աշխատավորության լայն մասսաներն ընտրական իրավունքից չեն օգտվում: Եգիպտացի կինը զրկված է ձայնի իրավունքից:

Բայց անգամ այդ խեղված կոնստիտուցիան շատ շուտով վերացվեց Եգիպտոսում: Միևնույն ժամանակ Անգլիան Եգիպտոսի «անկախության» վերաբերյալ իր դեկլարացիայի մեջ արել էր իրեն հատուկ իրավունքներ թողնելու վերապահությունը, իրավունքներ, որոնք հանգում էին Եգիպտոսի տերիտորիայի վրա Բրիտանական կայսերական ուղիների պաշտպանությանը, Եգիպտոսն օտարերկրյա ագրեսիայից պաշտպանելուն, Եգիպտոսում օտարերկրյա շահերը պաշտպանելուն և Սուդանի կառավարմանը: Դրանով իսկ Անգլիան առաջվա պես իր համար ապահովել էր Եգիպտոսի ներքին կյանքին միջամտելու իրավունքը:

Երկարատև բանակցություններից հետո, որոնք ընդհատումներով տարվում էին 1924 թվից սկսած, 1936 թվի օգոստոսին Անգլիայի և Եգիպտոսի միջև պայմանագիր

կնքվեց։ Այդ պայմանագրի համաձայն, ձևականորեն դադարեցվում էր Եգիպտոսի օկուպացիան անգլիական զորքերի կողմից, վերացվում էր կապիտուլյացիայի ռեժիմը (որը Եգիպտոսում պահպանվել էր XVI դարից և իրենից ներկայացնում էր Եգիպտոսում ապրող եվրոպացիներին տրված առանձնաշնորհումների մի սիստեմ) և Եգիպտոսին իրավունք էր վերապահվում Անգլիայի հետ միասին կառավարելու Սուդանը։ Դրանից բացի անգլիական գերագույն կոմիսարը մնում էր Եգիպտոսում լոկ անգլիական դեսպանի իրավունքներով, իսկ Եգիպտոսն իրավունք էր ստանում միջնորդել Ազգերի Լիգայի մեջ մտնելու մասին և սեփական բանակ ստեղծելու իրավունք, որից առաջ զրկված էր։

Ըստ այդ պայմանագրի Եգիպտոսն իր վրա էր վերցնում ռազմական ծանր պարտավորություններ. որպես «դաշնակից» նա պարտավորվում էր պատերազմի դեպքում Անգլիայի տրամադրության տակ դնել իր բոլոր ռազմական բազաները, օդանավակայանները, հաղորդակցության ու կապի ճանապարհները և անհրաժեշտ տերիտորիա, իր վրա էր վերցնում Անգլիայի համար հարկավոր ստրատեգիական երկաթուղային



ու խճուղային ճանապարհների, զորանոցների շինարարությունը և համաձայնվում էր այն բանի հետ, որ եգիպտական ազգային բանակի ուսուցումն ու ձևավորումը կատարվի անգլիացիների ղեկավարությամբ։ Վերջապես, Եգիպտոսը հարկադրվում էր համաձայնվել 20 տարով ևս իր տերիտորիայի վրա և ամենից առաջ Սուեզի ջրանցքի զոնայում թողնելու անգլիական օկուպացիոն բանակը (իսկ Կահիրեում և Ալեքսանդրիայում 5 և 8 տարով)։ Պայմանագրում եղած այս բոլոր վերապահումներն Անգլիային թույլ տվին Եգիպտոսը դարձնել իր ռազմա-ստրատեգիական բազան Մերձավոր Արևելքում։

## ԵԳԻՊՏՈՍԻ ԷԿՈՆՈՄԻԿԱՆ

Անգլիայի տիրապետությունը Եգիպտոսում ազդել է երկրի ամբողջ էկոնոմիկայի վրա, այն հարմարեցնելով անգլիական կարիքներին։

Գյուղատնտեսություն։ Բամբակի մոնոկուլտուրայի զարգացման օգնությամբ Եգիպտոսը դարձվել է Անգլիայի հումքային բազան։ Բամբակի համաշխարհային արտադրության մեջ Եգիպտոսը երրորդ տեղն է բռնում (ԱՄՆ-ից և ՍՍՌՄ-ից հետո), տա-

լով բամբակի համաշխարհային արտադրանքի 7%-ը: 1937—1938 թվերին Եգիպտոսում բամբակով զբաղեցված էր 1·783 հազար ֆեդդան (748,86 հազար հեկտար. ֆեդդան = 0,42 հեկտար): Բամբակի էքսպորտը կազմում է եգիպտական ամբողջ էքսպորտի 70-ից մինչև 90%-ը: Բամբակից բացի Եգիպտոսում մշակվում են ցորեն, եգիպտացորեն, բրինձ, շաքարեղեգ: Դաշտային կուլտուրաների ցանքատարածությունը 1938—1939 թվերին կազմում էր 2·234 հազար հեկտար:

Եգիպտոսն ագրարային երկիր է տնտեսության հետամնաց ձևերով: Նրա ազգաբնակչության 83%-ը ապրում է գյուղում և զբաղվում է գյուղատնտեսությամբ: Բայց գյուղացիական մասսաների գոյության հիմնական աղբյուրը՝ հողը գտնվում է խոշոր հողատեր-կալվածատերերի և օտարերկրյա ընկերությունների ձեռքում: Ավելի քան 1,5 միլիոն չքավորական տնտեսություններ ունեն 689 հազար ֆեդդան տարածությամբ հող, այնինչ 12 հազար խոշորագույն կալվածատերեր իրենց ձեռքումն են պահում 2·254 հազար ֆեդդան:

Օտարերկրյա, գերազանցապես անգլիական կապիտալը, որ ներդրված է զանազան



հողային ընկերություններում և հիպոթեկային բանկերում, մեծ դեր է խաղում երկրի գյուղատնտեսության մեջ և վաշխառուների հետ միասին ամենաանողոք կերպով շահագործում է եգիպտական գյուղացիությանը: Վերջինս նախակապիտալիստական շահագործման է ենթարկվում նաև կալվածատերերի կողմից, որոնց հողի վրա ստիպված է աշխատել սեփական հող չունենալու պատճառով:

**Արդյունաբերություն**: Եգիպտոսը պահելով իբրև իր ապրանքների շուկա, Անգլիան արգելակել է նրա արդյունաբերական զարգացումը: Եգիպտական ազգային արդյունաբերությունը, որը մաքսային հարկերով տարանջատված չէ իմպորտային ապրանքների կոնկուրենցիայից, թույլ չափով է զարգացել, մնալով մինչև վերջին ժամանակներս գերազանցապես տնայնագործական արդյունաբերության մակարդակի վրա:

Ամենից ավելի խոշոր ձեռնարկությունները Եգիպտոսում պատկանում են օտարերկրացիներին և ամենից առաջ անգլիացիներին: Նրանց ձեռքում է գտնվում համարյա ամբողջ արդյունահանող արդյունաբերությունը, այդ թվում նաև նավթային

ու նավթաթորման գործարանները Սուեզում և մարգանեցի հանքավայրերը Սինայում, ինչպես նաև բամբակազտիչ արդյունաբերությունը, մանածա-գործվածքային ձեռնարկությունները և շաքարի գործարանները (այստեղ ներդրված է նաև ֆրանսիական կապիտալը)։ Բոլոր խառն արդյունաբերական ընկերությունների հիմնական կապիտալը 1938 թվին կազմում էր մոտ 14 միլիոն եգիպտական ֆունտ, մինչդեռ ազգային ընկերությունների կապիտալը Միսր բանկի կապիտալի հետ միասին, մի բանկ, որի շուրջը նրանք խմբված են, չի անցնում 2,5 միլիոն եգիպտական ֆնտից։

Եգիպտոսի ձեռնարկություններում և տրանսպորտում զբաղված են ավելի քան 512 հազար բանվոր ու ծառայող 755 հազար ընդհանուր թվից։ Բանվորների մոտ կես մասը զբաղված է մանր տնայնագործական ձեռնարկություններում (1-ից մինչև 9 հոգի), որոնք չափազանց ցածր տեխնիկա ունեն։ Մյուս մասն աշխատում է օտարերկրյա, համեմատաբար ավելի խոշոր և մեքենայացված ձեռնարկություններում։

Եգիպտական պրոլետարիատն ամենատանջող շահագործման է ենթարկվում, աշխատելով ծայր աստիճան ծանր պայմաննե-



րում։ Եգիպտոսում բացակայում է բանվորական օրենսդրությունը, պրոֆմիությունները լեգալիզացիայի չեն ենթարկված, աշխատանքային օրվա տևողությունը չի սահմանափակված, աշխատավարձը չնչին է։

Երկրորդ իմպերիալիստական պատերազմն է՛լ ավելի վատթարացրեց եգիպտական պրոլետարիատի դրությունը, առաջացնելով աշխատանքային օրվա երկարացում, ապրուստային մինիմումի պակասեցում, հարկերի և թանկության աճում։ Բանակի և ռազմա-ստրատեգիական շինարարության համար աշխատանքային ուժի մոբիլիզացիան Եգիպտոսի բանվորներին ու գյուղացիներին ենթարկել է ռազմական ռեժիմին և անգլիական հրամանատարությանը։

**Արտաքին առևտուր**։ Եգիպտոսի արտաքին առևտուրը կրում է գաղութային բնույթ և ամբողջապես հիմնված է բամբակի արտահանության վրա։ Բամբակի էքսպորտը մոնոպոլիզացիայի են ենթարկել մի քանի խոշոր անգլիական ֆիրմաներ, որոնք միջնորդների միջոցով գնում են բամբակը եգիպտական գյուղացիությունից և հսկայական շահույթներ են ստանում։ Եգիպտոսի էքսպորտը 1939 թվին կազմեց 34 մի-

*լիոն եգիպտական ֆունտ, իմպորտը՝ նույնպես 34 միլիոն։*

Ֆինանսներ։ *Եգիպտոսի վրա ծանրացած է 95 միլիոն եգիպտական ֆնտի հասնող պետական պարտքը, որի վճարմանը գնում է գյուղացիությունից գանձվող հողային հարկը։ Դրանից բացի եգիպտական գյուղացին ուղղակի և անուղղակի հարկերի ձևով մեծ գումարներ է վճարում։ Պետական բյուջեյի եկամտային մասը կազմվում է այդ հարկերի 70%-ից։ Եկամուտների հիմնական մասը գնում է վարչական ծախսերին, թագավորական պալատի և անգլիական չինովնիկների պահպանմանը։*

---



# Լ Ի Բ Ի Ա

(Տեղեկանք)

## ՏԵՐԻՏՈՐԻԱՆ ԵՎ ԱԶԳԱԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

*Լիբիայի ընդհանուր տարածությունը 1.759 հազար քառակուսի կիլոմետր է։ Հյուսիսում Լիբիան ողողվում է Միջերկրական ծովով, արևմուտքում սահմանակից է Թունիսին և Ալժիրին, հարավում՝ Ֆրանսիական Արևմտյան Աֆրիկային և Ֆրանսիական Հասարակածային Աֆրիկային, արևելքում՝ Եգիպտոսին և Անգլո-Եգիպտական Սուդանին։*

*Ըստ 1936 թվի մարդահամարի, ազգաբնակչությունը, որը հաշվվում է մոտ 750 հազար, ճնշող մեծամասնությամբ բաղկացած է բնիկներից, որոնց մեջ գերակշռում են արաբները (585 հազար)․ այնուհետև գալիս են բերբերները (մոտ 70 հազար),*

*կուլուղլաները (35 հազար) և նեգրերը (30 հազար)։ Մնացած ազգաբնակչությունը (մոտ 30 հազար) իտալացիներ են, բացառությամբ 5 հազար հոգու, որոնք պատկանում են զանազան եվրոպական ազգությունների։ Այժմ իտալացիների թիվն ավելացել է, հատկապես 1938 թվից հետո, երբ Լիբիա փոխադրվեցին իտալացի շատ կոլոնիստներ ընտանիքների հետ միասին։*

*Բնիկ ազգաբնակչության մեկ յոթերորդական մասը քոչվորներից և կիսաքոչվորներից է բաղկացած։ Ամբողջ ազգաբնակչությունը, աննշան փոքրամասնությունից բացի, որն զբաղված է առևտրով, տնայնագործական արդյունաբերությամբ և ձկնորսությամբ, ապրում է գյուղատնտեսությամբ։*

*Լիբիան, որը բաղկացած էր երկու գաղութից՝ Տրիպոլիտանիայից ու Կիրենաիկից և մտնում էր Օսմանյան կայսրության մեջ,* 1911—1912 *թվականների պատերազմից հետո Թյուրքիայից անցավ Իտալիային։ Մինչև* 1938 *թվի աշունը Տրիպոլիտանիայի ու Կիրենաիկի տերիտորիան բաժանվում էր* 4 *նահանգի—Տրիպոլի, Միսուրատա, Բենղազի և Դերնա (համանուն գլխավոր քաղաքներով), և Հարավի ռազ-*



*մական տերիտորիան, որի հրամանատարությունը գտնվում էր անապատի օազիսների կենտրոն Խոնայում։ Գաղութի կառավարման գլուխն էր կանգնած նահանգապետը, որի ռեզիդենցիան Տրիպոլումն էր։*

1938 *թվի հոկտեմբերին Իտալիայի ֆաշիստական մեծ խորհուրդը հաստատեց մի դեկլարացիա, որն ասում էր, թե «այսուհետև Լիբիայի* 4 *նահանգները կազմելու են ազգային տերիտորիայի մի մասը»։ Ըստ այդ որոշման, Լիբիան գաղութից վեր է ածվում Իտալիայի նոր նահանգի։ Բնիկ ազգաբնակչության մի քանի խավերին տրվում են իտալական քաղաքացիության ձևական իրավունքներ։*

## ԷԿՈՆՈՄԻԿԱՆ

*Լիբիայի էկոնոմիկան հիմնված է համարյա բացառապես հողագործության վրա, որը կրում է պրիմիտիվ բնույթ և տալիս է խիստ աղքատիկ եկամուտ, քանի որ երկրի տերիտորիայի մեծ մասը ներկայացնում է չոր, ավազուտ մի հող, որը չի ենթարկվում մշակման։ Միայն ծովափի մոտ, ուր անդրադառնում է Միջերկրական ծովի կլիմայի բարերար ազդեցությունը և կան ջրային աղբյուրներ, հողագործու-*

թյունն օազիսներում քիչ թե շատ ծաղկած վիճակի մեջ է: Այնտեղ կան իտալացի խոշոր կոլոնիզատորների մի քանի կալվածքներ: Տեղ-տեղ պահպանված մանր, բաժան-բաժան տեղական հողատիրությունը հետզհետե կլանվում է մետրոպոլիայի կապիտալիստական խոշոր կոնցեսիոններների կողմից:

Չորային կլիման, ջրի բացակայությունը կանխորոշել են ազգաբնակչության քոչվորային ապրելակերպը: Հաճախակի են դեպքերը, երբ գյուղացիները գյուղատնտեսական սեզոնն սկսելիս չեն կարող որոշել, թե ի՛նչ և ի՛նչքան պետք է ցանեն և կարո՞ղ են արդյոք ընդհանրապես ցանել: Խաշնարածները ստիպված են շարունակ իրենց հոտերը տեղից-տեղ փոխադրել, քանի որ ջուրը հանկարծ չքանում է և արոտավայրերը չորանում են: Տափաստաններում ուր պակաս է ջուրը, որոշ տարիներ ամենևին բերք չի լինում:

Լիբիական գյուղացին հողը չի պարարտացնում: Միակ գործիքը, որից օգտվում է նա, արորն է: Այդպիսի պրիմիտիվ մշակման և հողի վատ որակի հետևանքով անսովոր ցածր բերք է ստացվում. Հեկտա-



րից 3—4 ցենտներն արդեն առատ բերք է համարվում:

Օազիսներում գլխավոր կուլտուրաներն են՝ ձիթապտղային արմավենի, նուռ, հնդկական թուզ, համեմարույսեր և այն բոլոր պտուղները, որոնք աճում են Միջերկրական ծովի հյուսիսային ափերին: Տափաստաններում բնիկները մշակում են գլխավորապես գարի և խուրմա, որոնք նրանց հիմնական սնունդն են հանդիսանում: Վերջին տարիներս մի քանի ռայոններում փորձում են մտցնել հացահատիկային կուլտուրաներ և խաղող:

Լիբիայում զարգացած է խաշնարածությունը: 1937 թվի նոյեմբերի 31-ին կատարված անասունների վերահաշվառման տվյալներով երկրում կար 10·274 ձի, 2·930 ջորի, 44·700 էշ, 76·800 ուղտ, 80 հազար կով, 478 հազար այծ, 531 հազար ոչխար և 600 խոզ:

Լիբիայի գյուղատնտեսական արտադրանքի մասին վիճակագրական տեղեկություններ չեն հրապարակվում: Միայն «Կորյերե դելլա սերա» թերթից քաղված անուղղակի տվյալների համաձայն հացահատիկային կուլտուրաների բերքը 1939 թվին կազմել է մոտավորապես 259 հազար կվինտալ,

գինու և ձիթապտղի յուղի արտադրանքը՝ մոտ 31 հազար հեկտոլիտր յուրաքանչյուրը:

Լիբիայի հողագործությունն ու խաշնարածությունը չեն տալիս բավականաչափ արտադրանք, որպեսզի հնարավոր լինի բավարարել երկրի կարիքները: Այդ պատճառով էլ նրա արտաքին առևտրի բալանսը պասսիվ է. 1938 թվին ներմուծվել է 882 միլիոն լիրի ապրանք, որի մոտ կեսը սննդամթերքներ, իսկ արտահանվել է 108 միլիոն լիրի ապրանք:

## ՍՏՐԱՏԵԳԻԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Բավական է մի հայացք նետել Միջերկրական ծովի քարտեզի վրա՝ հասկանալու համար Լիբիայի աշխարհագրական, քաղաքական, ռազմական և ստրատեգիական խոշոր նշանակությունը: Իտալացիները, Լիբիան (որը 6 անգամ մեծ է Իտալիայից և տարածվում է Միջերկրական ծովից մինչև աֆրիկյան անապատների սիրտը, Եգիպտոսից մինչև Թունիս), համարում են Ապենինյան թերակղզու միջերկրականծովյան հողերի բնական լրացումը: Իզուր չէ, որ Լիբիայի հանգուցյալ նահանգապետ մարշալ Բալբոն



հայտարարել է. «Լիբիան առաջնակարգ ստրատեգիական դիրք է հանդիսանում ոչ միայն Միջերկրական ծովի, այլև ամբողջ կայսրության համար»:

Անկասկած, Պանտելլերիա և Լամպեդուզա կղզիներում ամրությունների առկայության պայմաններում ծովային խոշոր բազաների կառուցումը Տրիպոլիում և Տոբրուկում (Լիբիա) փոխեց ուժերի փոխհարաբերությունը Միջերկրական ծովի կենտրոնական գոտայում ի նպաստ Իտալիայի: Ստրատեգիական կարևոր նշանակություն ունի նաև այն ճանապարհը, որ շինել են իտալացիները Միջերկրական ծովի լիբիական ափի երկայնքով Լիբիա—Թունիսյան սահմանից մինչև Լիբիա—եգիպտական սահմանը:

---

# Կ Ե Ն Ի Ա

(Տեղեկանք)

## ՏԵՐԻՏՈՐԻԱՆ, ԱԶԳԱԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ, ՔԱՂԱՔՆԵՐԸ

Կենիան անգլիական գաղութ է (պաշտոնապես՝ «գաղութ և պրոտեկտորատ») Արևելյան Աֆրիկայում, Հնդկական օվկիանոսի ափին: Հյուսիսից նա սահմանակից է Հաբեշստանին, արևելքից՝ Իտալական Սոմալիին, հարավից և արևմուտքից կցվում է անգլիական մյուս տիրակալություններին — մանդատային տերիտորիա Տանգանիկին և պրոտեկտորատ Ուգանդային: Վերջինս իր հերթին կցված է Անգլո-եգիպտական Սուդանին, որն արևմուտքից սահմանակից է Հաբեշստանի հետ: Այսպիսով, Կենիան կազմում է անգլո-իտալական ֆրոնտի ամենահարավային ճակատամասն Աֆրիկայում:



Կենիայի տարածությունը 582,4 հազար քառակուսի կիլոմետր է, ազգաբնակչությունը՝ 3·334 հազար (առ 1-ը հունվարի 1938 թվի): Հիմնական ազգաբնակչությունը կազմում են նեգրերը, եվրոպացիները— գլխավորապես անգլիացիներ և բուրեր— հաշվվում են 18,5 հազար հոգի, հնդիկները՝ ավելի քան 38 հազար, արաբները՝ 13 հազար հոգի:

Կենիան լեռնային երկիր է: Իր անունը ստացել է Կենիա լեռից, որը հավերժական ձյունով է պատված (արմատական բնակիչների լեզվով Կենիա նշանակում է «Սպիտակ լեռ»):

Կենիայի մայրաքաղաքն է Նայրոբին (50 հազար բնակիչ, որից 17 հազար հնդիկ և 5 հազար եվրոպացի): Գլխավոր նավահանգիստը Մոմբասան է (50 հազար բնակիչ, այդ թվում 800 եվրոպացի):

Կենիայում համեմատաբար լավ է զարգացած տրանսպորտը: Ընդհանուր օգտագործման համար բացված երկաթուղային ցանցի մարշրուտների երկարությունը 1622 կիլոմետր է: Կենիայի միջով են անցնում 2 ավիացիոն գծեր: Մոմբասայի միջինտարեկան բեռնաշրջանառությունը 4,5 միլիոն տոննա է, մանր նավահանգիստներինը

(Լամու, Մալինդի)՝ մոտ 100 հազար տոննա:

## ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

Անգլիայի կողմից զավթվելով անցյալ դարի 80-ական թվականներին, Կենիան դարձավ Մեծ Բրիտանիայի «թագապատկան գաղութը» 1920 թվին: Կենիայի ծովամերձ շերտը 10 մղոն լայնությամբ և Լամու, Մանդա, Պատտե ու Սիվա կղզիները համարվում են Զանզիբարի սուլթանին պատկանող հողեր և գտնվում են, սուլթանի այլ տիրակալությունների հետ միասին, անգլիական պրոտեկտորատի ներքո: Կենիայի այդ հողերի համար սուլթանը ստանում է տարեկան 10 հազար ֆունտ ստերլինգ: Սակայն վարչական տեսակետից գաղութի և պրոտեկտորատի միջև տարբերություն չկա:

Կենիան կառավարում է անգլիական նահանգապետը, որին կից կա «գործադիր խորհուրդ» (կառավարության նման մի բան) 12 չինովնիկներից բաղկացած, որոնք նշանակվում են նահանգապետի կողմից և հաստատվում են Անգլիայի թագավորի միջոցով, ապա և «օրենսդրական խորհուրդ» նահանգապետի նախագահությամբ: «Օրե-



նսդրական խորհուրդը» կազմվում է նահանգապետի կողմից նշանակվող 23 չինովնիկներից, եվրոպական ազգաբնակչության 11 ընտրովի ներկայացուցիչներից, հնդիկների 5 ընտրովի ներկայացուցիչներից (թեև վերջիններս կրկնապատիկ ավելի են եվրոպացիներից) արաբական 1 ներկայացուցչից. ավելի քան երեք միլիոն արմատական բնակիչները— նեգրերը— ներկայացված են երկու հոգով, որոնց նշանակում է նահանգապետը:

## ԷԿՈՆՈՄԻԿԱՆ

Ինչպես բոլոր գաղութները, Կենիան էլ ագրարային երկիր է: Այստեղ գյուղատնտեսությունը խստիվ բաժանված է երկու մասի՝ եվրոպական և բնիկ: Նեգրերը քշված են «ռեզերվատները», որոնց տարածությունը չի անցնում երկրի ամբողջ տերիտորիայի $^{1}/_{4}$-ից. մնացած հողը զավթել են եվրոպացի վերաբնակիչները: Գյուղատնտեսությունը զարգացած է միայն Կենիայի հարավ-արևմտյան մասում և մասամբ էլ ծովափին: Երկրի մեծ մասում (ամբողջ տարածության $^{3}/_{5}$-ում) պակասում է ջուրը: Առատ ջուր կա միայն ծովի մակերևույթից 1000 մետր բարձրության

վրա գտնվող Վիկտորիա լճի ռայոնում:

Արմատական ազգաբնակչությունը պահում է անասուններ՝ կով, ոչխար, այծ, ցանում է բամբակ, բայց գլխավորապես աշխատում է եվրոպացիների արտերում հարկադրական կարգով: Բոլոր չափահաս տղամարդ բնիկները ենթակա են պարտադիր ցուցակագրման և պետք է ունենան վկայական բթամատի դրոշմով, որպեսզի չկարողանան խուսափել «կոնտրակտացիայից»: Նրանք պարտավոր են աշխատել եվրոպացիների համար տարեկան առնվազն 180 օր չնչին վարձատրությամբ: Արձանագրված են 507 հազար տղամարդիկ, որոնց կեսը զբաղված է եվրոպացիների արտերում կիսաստրկական աշխատանք կատարելով:

Եվրոպայի պլանտատորները բարձր տեղերում մշակում են հացահատիկային կուլտուրաներ, բանջարեղեն, պտղատու ծառեր: Մշակում են նաև էքսպորտային կուլտուրաներ:

Կենիայի բնական հարստությունների թվին են պատկանում ընդարձակ անտառ-



ները: Հանածոները, բացի ոսկուց և աղից, մշակվում են թույլ չափով, թեև երկրում կան պղնձի, ասբեստի, մարգանեցի, պոտաշի, անագի հանքավայրեր: Մի նավթային ընկերության կոնցեսիա է տրված նավթ որոնելու համար:

## ԱՐՏԱՔԻՆ ԱՌԵՎՏՈՒՐԸ ԵՎ ԲՅՈՒՋԵՆ

Կենիան արտահանում է գերազանցապես եվրոպացիների կողմից մշակվող կուլտուրաներ—սուրճ, որը կազմում է ամբողջ էքսպորտի 50%-ը, շաքարեղեգ, թեյ, եգիպտացորեն: Նեգրերի գյուղատնտեսության արտադրանքից արտահանվում են բամբակ, կաշի, բուրդ: Կենիայի արտաքին առևտրի մեջ առաջին տեղը գրավում են Անգլիան և նրա տիրակալությունները (ավելի քան 50%), 11%-ն ընկնում է Իտալիային, 8%-ը՝ Ճապոնիային:

Կենիայի բյուջեն 3,4 միլիոն ֆունտ ստերլինգ է: Ծախսերի մեկ երրորդական մասը գնում է 17,6 միլիոն ֆունտ ստեր-

լինչև հասնող պետական պարտքի վճարմանը, իսկ ժողովրդական առողջապահության և լուսավորության վրա ծախսվում է բյուջեի 1/10 մասը միայն: Եկամտի կարևոր հոդվածն է հանդիսանում գլխահարկը, որով հարկվում են բոլոր նեգրերն ու հնդիկները:

---


Պատասխանատու խմբագիր՝
Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Սրբագրիչ՝ Հ. ԶՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ
ՎՖ 2402
Պատվեր՝ 895, Տիրաժ 7960.
Հանձնված է արտադրության 25/IX 1940 թ.
Ստորագրված է տպագրության 2/X 1940 թ.

---

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից Թերթերի
և ամսագրերի տպարան, Երևան


ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ



ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ